խնդիրին լուծում մը գտնել

Համաձայնութիւն մը կարելի է գոյացնել՝ եթէ Ռուսերը հրաժարին իրենց վերջնագիրէն, անմիջական Պէրլին։

Ամերիկեան ծերակոյտին մէջ դեմոկրատ ազդեցիկ պարագլուխներէն Հըմֆրէյ յայտարարեց.— «Հանդիպումի մը ժամը հնչած է։ Կ'առաջարկեմ որ Միացեալ Նահանգներու Նախագահը առնէ նախաձեռնութիւնը եւ Նախագահ Տը Կոլը Ուաշինկթըն հրաւիրէ։ Երբ Զօր. Տը Կոլ Միացեալ Նահանգներ գայ՝ ապա աշխարհի դիրքը աւելի պիտի զօրանայ»։

## ՆՈՐԵՐՈՒ ՅԱՋՈՂՈՒԹԻՒՆՆԵՐ

Միչէլ Գազանճեան յաջողած է պաքալորէայի երկրորդ բաժինը (փորձառական գիտութիւններ) մասնաւոր յիշատակութեամբ, իսկ լիսէ ժագ Տըքուրի տարեշրջանը աւարտած է Փրի տ'Էքսէլանսով և մասնայատուկ արձանագրութեամբ Պատուոյ Տախտակին վրայ։

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Ընկեր Մարտիրոս Մութաֆեան կը նուիրէ երկու հազար ֆրանք Մշակոյթի Տան, Սիրուն Բաղումճեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի։ (Ստանալ («Յառաջ»էն)։

### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Ընկեր Գ. Բալայեանի նոր հասցէն՝

17 Rue Bleue, Paris 9ème.

### ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Տեղերը խիստ սահմանափակ ըլլալով անապայմանօրէն շուտ արձանագրուիլ ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԲԱՆԱԿՈՒՄԻՆ

Դիմել՝ Փարիզի շրջան, 17 Րիւ Պլէօ, Փարիզ (9), ամէն Շաբաթ կէս օրէ ետք ժամը 3.30էն 6։

Մարսէյլի շրջան,

Jean Kazarian, voyagence
31 La Canebière, Marseille

## ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ
### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կազմակերպուած Հ. Յ. Դ. Հայաստան Ենթակոմիտէի կողմէ։

Այս Կիրակի ամբողջ օրը Սէն Ժիւսթ, Ավընիւ Փօոօ, Պառ տիւ Շալէի պարտէզին մէջ։

Հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի Շրջ. Կոմիտէի։

Կը նախագահէ ընկ. Կ. ՃԱՆԻԿԵԱՆ։

Կը խօսի ընկ. ԺԻՐԱՅՐ ՄԻՐԻՃԵԱՆ։

Խօսք՝ Շրջ. Կոմիտէի ներկայացուցիչի կողմէ։ Խօսնակ ընկ. Կ. ՅԱՐՈՒԹԻՒՆԵԱՆ։

### ԵՂԱՆԱԿԻ ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ
### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Տարօն Սալնոյ Ձորի Հայր. Միութեան, ի յիշատակ Տարօն Սալնոյ Ձորի հերոսներու։

12 Յուլիս, Կիրակի ամբողջ օրը Սէնթ Անտրէի ծանօթ պարտէզին մէջ։

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ
### ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ

Մեր բաժանորդները որ կը փափաքին առժամապէս, նոր հասցէի մը ստանալ թերթը պէտք է գրաւոր դիմեն վարչութեան։ Փոխելի թուականէն գոնէ երկու օր առաջ, պէտք է տան ԻՐԵՆՑ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՀԱՍՑԷՆԵՐԸ, վճարեն հարիւր ֆրանք փոփոխութեան համար եւ նորոգած ըլլան իրենց ընթացիկ բաժանորդագրութիւնը։

Այս պայմանները չլրացնող դիմումներուն ընթացք պիտի չտրուի. Նոյնպէս՝ նկատի պիտի չառնուին միայն հեռաձայնով կատարուած հաղորդումները, որոնք կրնան անունի եւ հասցէի սխալներ ստեղծել։

Մեր հատադնորդ ընթերցողներուն համար, արձակուրդի բացառիկ միամսեայ բաժանորդագրութեան գինն է 600 Ֆր.։

×

Անգամ մը եւս կը խնդրենք մեր հաւատարիմ բաժանորդներէն որ փութան կատարել իրենց վճարումները, դիւրացնելու համար վարչութեան գործը։

Շնորհակալութիւն այն բոլոր բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ պարտաճանաչ վճարումներով կ'օժանդակեն թերթին կանոնաւոր հրատարակութեան։

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Կրօն. Ընկերակցութեան վարչութիւնը շնորհակալութեամբ ստացած է, փոխան ծաղկեպսակի, ողբացեալ Մինէւեր Աթթարեանի մահուան առթիւ, հայերէն դասընթացքին ի նպաստ, 500 ֆրանք Գ. Ճ. Տերոյեան, 1500 Ֆր. Տէր եւ Տիկին Ա. Աթթարեան եւ զաւակունք (Թուլոն), հազարական ֆրանք Տիկին Պէչիչեան (Կրընոպլը), Գ. Մելքի Գլըպէրեան եւ Տէր եւ Տիկին Զ. Ալեքսանեան։

### ՏԱՐԵԿԱՆ ՄԵԾ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Համա–Խարբերդ. Միութեան Մարսէյլի եւ Սէն Լու Կրան Բէնի քոյր մասնաճիւղերու։

Կիրակի, 12 Յուլիս ամբողջ օրը Գ. Հայկազ Զուֆուրեանի օդաւուն եւ ընդարձակ ագարակը, Սէն Լու Կրան Բէն։ Կը բանախօսէ Փրօֆ. ԽԱՑԻԿԵԱՆ։

Սեբաստիոյ Նահանգի Մուրատ Ռուբինեան Նախիրացի Տէսինի մասնաճիւղին դաշտահանդէսը՝ Յուլիս 19ին։

### Կ'ՈՒԶՈՒԻՆ

Կնոջ շըմիզիէի համար (ճոնֆէքսիոն) լաւ մասնագէտ գործաւորուհիներ, տունը կամ արհեստանոցը աշխատելու դիւրութեամբ։ Լաւ վճարում, մնայուն գործ։ Ներկայանալ.—

ANNY, 43 Rue Thubanneau
Marseille



### ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԴԷՊԻ
### TRILPORT

Փարիզի Նոր Սերունդի «Ահարոնեան» խումբը կազմակերպած է 12 Յուլիսին, զբօսապտոյտ մը դէպի Թրիլփոռ շոգեկառքով։

Կը հրաւիրուին Փարիզի շրջանի բոլոր Նոր Սերնդականները եւ փափաքողները։

Ժամադրութիւն՝ ժամը 9ին Կառ տը լ'Էսթ, Հօլ Պանլիէօ։

Երթուդարձ 550 ֆրանք։

### ԸՆՏԱՆԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Ֆ. Կապ. Խաչի 30ամեակի առթիւ, կազմակերպուած Ֆ. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղի կողմէ, 12 Յուլիս, Կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ ջրանցքին ափը, Կապիյոնի սրճարանին գեղատեսիլ պարտէզին մէջ։

Կը բանախօսէ՝ ընկերուհի ԱՐՇԱԼՈՅՍ ՍԻՄԼԵԱՆ։

Ճոխ պիւֆէ, սիրուն անակնկալներ, հաճելի ժամանց։ Կը հրաւիրուի Տէսինի եւ Լիոնի Հայութիւնը անխտիր անձրեւի պարագային՝ ապահով վայր։



## Հ. Յ. Դ.
### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

★

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջաններու ընկերները այս Շաբաթ, ժամը 20.30ին, Մշակոյթի Տան մեծ սրահին մէջ, 17 Րիւ Պլէօ, մեթրօ Քատէ։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՎԱԼԱՆՍ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի ընկերական ժողովը, այս Շաբաթ, ժամը 20.30ին, Ահարոնեան ակումբը։ Ներկայ պիտի ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը։ Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է։

ԿՐԸՆՈԲԼԸ.— Հ. Յ. Դ. Եօթնեղբայրեանի ընդհ. ժողովը այս Շաբաթ գիշեր, դպրոցի սրահին մէջ ժամը 21ին։ Ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է։ Կարեւոր օրակարգ։

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ կը տօնուի Կրընոպլի մէջ Յուլիս 19ին, Շաթօ տը Պօրըկարի մէջ։

×

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Յուլիս 26ին։

×

ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Յուլիս 26ին։

Մանրամասնութիւնները յաջորդով։

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

սին թէ պէտք չէ տարբերութիւն դնել Տը Կոլի եւ Տըպրէի քաղաքականութեան միջեւ։ Ես, համոզուած կը մնամ որ միայն Տը Կոլ ունի հարկ եղած հեղինակութիւնը՝ բանակին եւ հանրային կարծիքին վրայ, որպէսզի քաղաքական լուծում մը պարտադրէ Ալժերիոյ մէջ։ Հակառակ պարագային Ե. Հանրապետութիւնը կը մեռնի »։

---

ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Ընկեր Գ. Բալայեանի նոր հասցէն՝

17 Rue Bleue, Paris 9ème.

---

ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

Տեղերը խիստ սահմանափակ ըլլալով անյապաղ աճապարեցէք շուտ արձանագրուիլ

ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԲԱՆԱԿՈՒՄԻՆ

Դիմել՝ Փարիզի շրջան, 17 Րիւ Պլէօ, Փարիզ (9), ամէն Շաբաթ կէսօրէ ետք ժամը 3-30էն 6:

Մարսէյլի շրջան,

Jean Kazarian, voyagence
31 La Canebière, Marseille

---

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

Արձանագրութիւնները բացուած են 1959 – 1960 ուսումնական տարեշրջանի համար։

Իրենց զաւակները արձանագրել փափաքող ծնողքները փութան դիմել տնօրէնութեան, գրաւոր կամ հեռախօսով, ամէն օր։

26, RUE TROYON, SEVRES
TEL OBS 18-28

Վարժարանին մէջ լրիւ կ'աւանդուին ազգային գիտութիւնները եւ ֆրանսական երկրորդական ուսմանց ամբողջական ծրագիրը, մինչեւ Պաքալօրէայի առաջին մասը։

---

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ
### ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ

Մեր բաժանորդները որ կը փափաքին առժամապէս, նոր հասցէի մը ստանալ թերթը պէտք է գրաւոր դիմեն վարչութեան։ Փոխելի թուականէն գոնէ երկու օր առաջ, պէտք է տան ԻՐԵՆՑ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՀԱՍՑԷՆԵՐԸ, վճարեն հարիւր ֆրանք փոփոխութեան համար եւ նորոգած ըլլան իրենց ընթացիկ բաժանորդագրութիւնը։

Այս պայմանները չլրացնող դիմումներուն գոհացում պիտի չտրուի. նոյնպէս՝ նկատի պիտի չառնուին միայն հեռաձայնով կատարուած հաղորդումները, որոնք կրնան անունի եւ հասցէի սխալներ ընտեղծել։

Մեր հաստատնորդ ընթերցողներուն համար, արձակուրդի բացառիկ միամսեայ բաժանորդագրութեան գինն է 600 Ֆր.։

×

Անգամ մը եւս կը խնդրենք մեր հաւատարիմ բաժանորդներէն որ փութան կատարել իրենց վճարումները, դիւրացնելու համար վարչութեան գործը։

Շնորհակալութիւն այն բոլոր բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ պարտաճանաչ վճարումներով կ'օժանդակեն թերթին կանոնաւոր հրատարակութեան։ ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

---

## ԴՊՐՈՑ. ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆ

1959 – 1960ի դպրոցական տարեշրջանի արձանագրութիւնները սկսած են։ Ամէն անոնք որ կը փափաքին իրենց զաւակները արձանագրել, պէտք է փութան այժմէն իսկ դիմել Հաստատութեան Տնօրէնութեան։

Դպրոցասէրը կը հետեւի պետական լիսէներու պաշտօնական ծրագրին, աշակերտուհիները կը պատրաստէ պրէվէի եւ պաքալօրէայի քննութիւններուն, տալով նաեւ անոնց հայեցի դաստիարակութիւն, հայերէնի, գրականութեան, պատմութեան եւ կրօնի ծանօթութիւններով։

Դիմել՝ 1 Պուլվ– տիւ Նոր, Լը Րէնսի։
Հեռաձայն՝ Լը Րէնսի 172։

---

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ կը տօնուի Կրընոպլի մէջ Յուլիս 19ին, Շաթօ տը Պօրկարի մէջ։

×

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ
Յուլիս 26ին։

×

ՏԷՍԻՆԻ ՄԷՋ
Յուլիս 26ին։
Մանրամասնութիւնները յաջորդով։

---

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Առնուվիլի Վարագայ Ս. Խաչ եկեղեցւոյ Օժանդակ Տիկնանց Միութիւնը շնորհակալութիւն կը յայտնէ բոլոր անոնց՝ որոնք Յուլիս 5ին դաշտապնացութեան, բարոյապէս թէ նիւթապէս, ինչպէս նաեւ միճակահանութեան համար իրենց նուիրատուութիւններով օժանդակեցին յաջողութեան։ Պ. Պ. Ժիրայր Ունճեան եւ Միքայէլ Հուպուեան իրենց նուագով եւ երգերով ոգեւորութիւն ստեղծեցին։

## ՏԱՐԵԿԱՆ ԱՅՑԵԼՈՒԹԻՒՆ
### Ս. ՂԱԶԱՐ - ՎԵՆԵՏԻԿ

ՓԱՐԻԶԻ ԽՈՒՄԲ

Ս. ՂԱԶԱՐ, ՎԵՆԵՏԻԿ ԵՒ ՇՐՋԱԿԱՅՔԸ

ՄԵԿՆՈՒՄ՝ Օգոստոս 8։

ՎԵՐԱԴԱՐՁ՝ Օգոստոս 31։

Ճամբորդներու թիւը սահմանափակ է։

Արձանագրուիլ մինչեւ Յուլիս 15։

Պ. ԶՊՈՒՔՃԵԱՆ
7, Rue de la Grange Batelière, Paris-9 Tél. PRO. 56 31

Պ. ԹԱՐՈՆ
58, Bd. Serrurier, Paris 19 - métro Pré-St-Gervais

Յ. ՊԱՍՄԱՃԵԱՆ
11, Ave. Béranger, Arnouville-les-Gonesses (S. et O.)

---

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Սեբաստիոյ Նահանգի Մուրատ Ռուսումնասիրացի Տէսինի մասնաճիւղին դաշտահանդէսը՝ Յուլիս 19ին։

---

# ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

## ՇԱՒԻԼԻ ՄԷՋ

Կիրակի, Յուլիս 26, առաւօտէն մինչեւ իրիկուն, Շաւիլի անտառին մէջ, զինեզմանատան մօտ:

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. ԱՐՂՈՒԹԵԱՆ խումբին, հովանաւորութեամբ Փարիզի ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻՆ եւ մասնակցութեամբ Փարիզեան շրջանի բոլոր խումբերուն:

Գեղարուեստական ճոխ բաժին: Անձրեւի պարագային ապահովուած է բաղաքապետարանին սրահը:

Մասնաւոր տեղ կառքերու համար:

Հասցէն՝ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Ալֆորվիլէն օթօքառները կը մեկնին առաւօտեան ժամը ութին, Պուլվ. Քառնոյէն: Այժմէն ապահովեցէք ձեր տոմսակները: Գին՝ 400 ֆրանք:

×

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կիրակի, Յուլիս 26, ամբողջ օրը, ՎԱԼԱՊՐԻ ԱՆՏԱՌԻՆ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Մարսէյլի Հ. Յ. Դ. ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻՆ

Կը նախագահէ՝ ԸՆԿ. Յ. ԳԵՏՐՈՍԵԱՆ

Կը խօսի ընկ. Ա. ՔԷՕՍԷԵԱՆ

Գեղարուեստական բաժին— Հայկական պարեր Սէն Լուի Նոր Սեբաստիոյ պարախումբին կողմէ: Գուլի մրցում, շամփուրով խորոված, պիւֆէ:

ՄԱՐՍԷՅԼ քաղաքի համար արձանագրուիլ մինչեւ Ուրբաթ 24 Յուլիս, 300 ֆրանք երթուդարձի համար: Ա. Քէօսէյեանին (Փլաս տ'էքս): «Յառաջ»ի հաստավաճառ Գ. Տէրկեանին, (Տոմի-նիքէն), ժամավաճառ Ա. Գէորգեանին (Փըթիթ Մարի): Օթոքառը Փլաս տ'էքսէն նոյն օրը առաւօտ ժամը եօթին:

ԳՈՄՈՆԷՆ հանրակառքը կը մեկնի ժամը 7·30ին:

Արձանագրուիլ ընկերներ Նշան Դարբինեանի, Յակոբ Տօլպաշեանի, Սերժ Սարգիսեանի եւ Յովսէփ Գոճակէօզեանի մօտ:

## ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «Վարուժան» կոմիտէի եւ մասնակցութեամբ Սէնթ Էթիէնի «Անտոք» ենթակոմիտէին և Նոր Սեբաստիոյ «Վարդգէս» խումբին:

26 Յուլիս, Կիրակի առաւօտեան ժամը տասնէն մինչեւ 22, Փոն Անթէնի (Վարիզէլ) Օ Պեռժ տը Սոլ գովասուն պարտէզին մէջ:

Նախագահութեամբ՝ ընկեր Ա. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆի:

Կը խօսի ընկ. Ս. ԸՆՏՐԻԿԵԱՆ:

Գեղարուեստական ճոխ բաժին եւ այլ անակնկալներ:

Մասնակցութեամբ Սէնթ Էթիէնի եւ Սէն Շամոնի Նոր Սեբաստիոյին:

Կը հրաւիրուին՝ Ֆրանսայի բոլոր քոյր կազմակերպութիւնները:

Ուտելիքներ հետերնին բերել, բացի խմիչքէն:

×

## ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

Խանասորի արշաւանքի առիթով կը տօնուի՝ ընտանեկան զբօսահանդէսով:

Կազմակերպուած՝ Տէսինի եւ Լիոնի կոմիտէներուն կողմէ:

Տեղի պիտի ունենայ 26 Յուլիս, Կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ, Բաֆէ Լամարկի եռեւի գովասուն պուրակին մէջ: Ճոխ պիւֆէ, մատչելի գիներով:

Գեղարուեստական բաժին, անակնկալներ: Կը հրաւիրուի Լիոնի եւ Տէսինի Հայութիւնը անխտիր:

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ամփոփողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ Հ. Յ. Դ. «Արամ» ենթակոմիտէի եւ «Շ. Միսաքեան» խումբի ընկերները այս Երեքշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան սրահին մէջ, 17 Րիւ Պլէօ, մեթրօ Քատէ: Պարտաւորիչ ներկայութիւն:

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

### ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ

Մեր բաժանորդները որ կը փափաքին արձակուրդի, նոր հասցէի մը առանալ թերթը պէտք է գրաւոր դիմեն վարչութեան: Փոխելի թուականէն գոնէ երկու օր առաջ, պէտք է տան ԻՐԵՆՑ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՀԱՍՑԷՆԵՐԸ, վճարեն հարիւր ֆրանք փոփոխութեան համար եւ նորոգած ըլլան իրենց ընթացիկ բաժանորդագրութիւնը:

Այս պայմանները չլրացնող դիմումներուն գոհացում պիտի չտրուի. նոյնպէս՝ նկատի պիտի չառնուին միայն հեռաձայնով կատարուած հաղորդումները, որոնք կրնան առնուիլ եւ հասցէի սխալներ բանեցնել:

Մեր հատավաճառ ընթերցողներուն համար, արձակուրդի բացառիկ միամսեայ բաժանորդագրութեան գինն է 600 Ֆր.:

×

Անգամ մը եւս կը խնդրենք մեր հաւատարիմ բաժանորդներէն որ փութան կատարել իրենց վճարումները, դիւրացնելու համար վարչութեան գործը:

Շնորհակալութիւն այն բոլոր բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ պարտաճանաչ վճարումներով կ'օժանդակեն թերթին կանոնաւոր հրատարակութեան:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՎԱՐՁՈՒ Է

Քօթ տ'Ազիւրի վրայ վարձու է եւ անմիջապէս տրամադրելի ամէն յարմարութիւններով օժտուած յարկաբաժին մը, (մեծ սթիւտիօ), Թուլօն Սիւր Մեռ: Կահաւորուած չորս հոգիի համար: Դիմել՝

Mme. Danglard
9 Rue Mazagran, Paris
Հեռաձայն՝ ՓՐՕ. 01·69 (դրասենեակի ժամերուն):

## Շ Ա Ւ Ի Լ

Շաւիլի Հայոց Եկեղեցիին հոգաբարձութիւնը կը յայտարարէ թէ Յուլիս 26-ին կիրակի առաւօտ պիտի կատարուի պատարագը:

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

### ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏՕՆ

Կազմակերպուած Փարիզի եւ շրջակայից Հայոց. Առաքելական Եկեղեցւոյ Կրօնական Ընկերութեան կողմէ, տեղի պիտի ունենայ 11 Հոկտ. 1959, ժամը երեքին:

Սորպոնի մեծ Ամփիթատրոնին մէջ:

Մանրամասնութիւնները յետագային:

Նկատի ունենալ այս թուականը:

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

# ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

## ՇԱՒԻԼԻ ՄԷՋ

Կիրակի, Յուլիս 26, առաւօտէն մինչեւ իրիկուն, Շաւիլի անտառին մէջ, գերեզմանատան մօտ:

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. ԱՐՂՈՒԹԵԱՆ խումբին, հովանաւորութեամբ Փարիզի ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻՆ եւ մասնակցութեամբ «Զաւարեան» կոմիտէի, «Ս. Մինասեան», «Արծիւ», «Վարդան», «Արամ» ենթակոմիտէներու եւ «Փոթորիկ», «Րաֆֆի», «Ռոստոմ», «Քրիստափոր», «Աղբիւր Սերոբ – Մկրտիչ Եօթնեղբայրեան», «Շ. Միսաքեան» խումբերուն:*

*Կը խօսին* ԸՆԿԵՐՆԵՐ ԳԵՐԱՍԻՄ ԲԱԼԱՅԵԱՆ *եւ* ՀՐԱՉ ՀԱՆՏԱԼԵԱՆ

*Ժամը 15ին յարգանքի այց* Իշխան եւ Իշխանուհի Յովսէփ եւ Սաթենիկ Արղութեանցի, եւ թժ. Յովսէփ Տէր-Դաւթեանի *շիրիմներուն:* *Կը խօսի Շաւիլի քաղաքապետ՝* ՕՍԷՌ

*Գեղարուեստական ճոխ բաժին:* *Կը մասնակցին՝* Տիկին Շաքէ Գալայճեան, Օր. Շաքէ Յովհաննէսեան, Աստղիկ Քէօսէեան, ընկեր Երուանդ Գրիգորեան: Անձրեւի պարագային ապահովուած է քաղաքապետարանին սրահը:

*Ճոխ եւ առատ պիւֆէ:* *Մասնաւոր տեղ կառքերու համար:*

*Հասոյթը՝* ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Ալիֆորվիլէն օթօքառերը *կը մեկնին առաւօտեան ժամը ութին,* Գույվ. Քառնոյէն *իսկ Փորթ տ'Իթալիէն ժամը 8·30ին*

*Այժմէն ապահովեցէք ձեր տոմսակները: Գին՝* 400 *Ֆրանք:*

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կիրակի, Յուլիս 26, ամբողջ օրը, ՎԱԼԱՊՐԻ ԱՆՏԱՌԻՆ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Մարսէյլի Հ. Յ. Դ. ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻՆ*

*Կը նախագահէ՝ ԸՆԿ. Յ. ՊԵՏՐՈՍԵԱՆ*

*Կը խօսի ընկ. Ա. ՔԷՕՍԷԵԱՆ*

*Գեղարուեստական բաժին— Հայկական պարեր Սէն Լուի Նոր Սերունդի պարախումբին կողմէ: Գուլի մրցում, չամփուրով խորոված, պիւֆէ:*

*ՄԱՐՍԷՅԼ քաղաքի համար արձանագրուիլ մինչեւ Ուրբաթ 24 Յուլիս, 300 Ֆրանք երթուդարձի համար: Ա. Քէօսէյեանին (Փլաս տ'Էքս): «Յառաջ»ի հաստատման Գ. Տէրիկեանին, (Տամինիքէն), մասնաճառ Ա. Պետրոսեանին (Փրթիթ Մարի):*

*Օթօքառը Փլաս տ'Էքսէն նոյն օրը առաւօտ ժամը 8ին:*

*ԳՈՄՈՆԷՆ հանրակառքը կը մեկնի ժամը 7·30ին:*

*Արձանագրուիլ ընկերներ Նշան Դարբինեանի, Յակոբ Տօլպաշեանի, Սերժ Սարգիսեանի եւ Յովսէփ Գոճակէօզեանի մօտ:*

## ՇԱՒԻԼ

*Շաւիլի Հայոց Եկեղեցիին հոգաբարձութիւնը կը յայտարարէ թէ Յուլիս 26-ին կիրակի առաւօտ պիտի կատարուի պատարագը:*

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

### ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏՕՆ

*Կազմակերպուած Փարիզի եւ շրջակայից Հայոց. Առաքելական Եկեղեցւոյ Կրօնական Ընկերութեան կողմէ, տեղի պիտի ունենայ 11 Հոկտ. 1959, ժամը երեքին: Սորպոնի մեծ Ամփիթատրոնին մէջ: Մանրամասնութիւնները յետոյ: Նկատի ունենալ այս թուականը:*

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »



## ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «Վարուժան» կոմիտէի եւ մասնակցութեամբ Սէնթ Էթիէնի «Անտոք» ենթակոմիտէին և Նոր Սերունդի «Վարդգէս» խումբին:*

*26 Յուլիս, Կիրակի առաւօտեան ժամը տասնէն մինչեւ 22, Փոն Անթէնի (Վարիգէլ) Օ Պեռժ տը Սօլ զովասուն պարտէզին մէջ:*

*Նախագահութեամբ՝ ընկեր Ա. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆԻ:*

*Կը խօսի ընկ. Ս. ԸՆՏՐԻԿԵԱՆ:*

*Գեղարուեստական ճոխ բաժին եւ այլ անակնկալներ:*

*Մասնակցութեամբ Սէնթ Էթիէնի եւ Սէն Շամոնի Նոր Սերունդին:*

*Կը հրաւիրուին Կեդր. Ֆրանսայի բոլոր քոյր կազմակերպութիւնները:*

*Ուտելիքներ հետերնին բերել, բացի խմիչքէն:*

## ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

*Խանասորի արշաւանքի առիթով կը տօնուի՝ ընտանեկան դաշտահանդէսով:*

*Կազմակերպուած՝ Տէսինի եւ Լիոնի կոմիտէներուն կողմէ:*

*Տեղի պիտի ունենայ 26 Յուլիս, Կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ, Քաֆէ բակի առաւօտէն մինչեւ երեկոյ Ջրանցքին ափին, «Քաֆէ Կապիյօն»ի բակին մէջ: Ճոխ պիւֆէ, չամփուրով խորոված, մատչելի գիներով:*

*Գեղարուեստական բաժին, անակնկալներ: Կը հրաւիրուի Լիոնի եւ Տէսինի Հայութիւնը անխտիր:*

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանին համար, 1) *Նախապատրաստական 8-7րդ դասարաններուն համար իբրեւ ուսուցչուհի հայ օրիորդ մը, որ Ֆրանսական բարձրագոյն կրթութիւն ստացած ըլլայ. ի հարկին գիշերօթիկ:*

*2) Աշխատող կին մը, իբրեւ օգնական խոհարարուհի:*

*Դիմել վարժարան, գրաւոր կերպով, տալով անուն, տարիք եւ հասցէ:*

1 Bld. du Nord - Le Raincy
Seine-et-Oise

## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ.— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն առիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ Հ. Յ. Դ. «Արամ» ենթակոմիտէի եւ «Շ. Միսաքեան» խումբի ընկերները այս Երեքշաբթի, ժամը 21ին, Մշակոյթի Տան սրահին մէջ, 17 Րիւ Պլէօ, մէթրօ Քատէ: Պարտաւորիչ ներկայութիւն:*

## ԿԱՐԵՒՈՐ

### Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԲԱՆԱԿՈՒՄ

*Վերջին կարգադրութիւններուն համար, բանակումի բոլոր մասնակցողները առիպողաբար կը հրաւիրուին այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին, Մշակոյթի Տան սրահը, 17 Րիւ Պլէօ, իւրաքանչիւր մասնակցողը այդ օրը պէտք է վճարէ հինգ հազար Ֆրանք որպէս կանխավճար եւ հինգ հազար Ֆրանք հաւաքական տոմսին համար:*

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

### ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ

*Մեր բաժանորդները որ կը փափաքին առժամապէս, նոր հասցէի մը ստանալ թերթը պէտք է գրաւոր դիմեն վարչութեան: Փոխելի թուականէն գոնէ երկու օր առաջ, պէտք է տան ԻՐԵՆՑ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՀԱՍՑԷՆԵՐԸ, վճարեն հարիւր Ֆրանք փոփոխութեան համար եւ նորոգած ըլլան իրենց ընթացիկ բաժանորդագրութիւնը:*

*Այս պայմանները չլրացնող դիմումներուն գոհացում պիտի չտրուի. նոյնպէս՝ նկատի պիտի չառնուին միայն հեռաձայնով կատարուած հաղորդումները, որոնք կրնան անունի եւ հասցէի սխալներ ըստեղծել:*

*Մեր հատավճարդ ընթերցողներուն համար, արձակուրդի բացառիկ միամսեայ բաժանորդագրութեան գինն է 600 Ֆր.:*

×

*Անգամ մը եւս կը խնդրենք մեր հաւատարիմ բաժանորդներէն որ փութան կատարել իրենց վճարումները, դիւրացնելու համար վարչութեան գործը:*

*Շնորհակալութիւն այն բոլոր բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ պարտաճանաչ վճարումներով կ'օժանդակեն թերթին կանոնաւոր հրատարակութեան:* ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ՝ ՆԻՍԻ ՄԷՋ

*Հ. Յ. Դ. Գէորգ Չաւուշ խումբը կը յայտարարէ թէ բացուած է Նիսի իր գրադարանը՝ «Իշխան Արղութեան մատենադարան»:*

*Հասցէ՝* 49, Րիւ Լամարթին, Նիս:

*Վարիչ՝ Ընկ. ՍՈՒՐԷՆ ԱԼԻՔՍԱՆԵԱՆ:*

*Մատենադարանի վարչութիւնը կը խնդրէ ընթերցողներէն՝ որ հաճին հազար Ֆրանք պահ դնել, գումարը պիտի վերադարձուի՝ երբ գիրքը ստացուի:*

*Իբրեւ վարձք՝ 50 Ֆրանք գիրք գլուխ:*

*Մատենադարանը ճոխ է հայերէն եւ ֆրանսերէն գիրքերով:*

# ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

## ՇԱՒԻԼԻ ՄԷՋ

Կիրակի, Յուլիս 26, առաւօտէն մինչեւ իրիկուն, Շաւիլի անտառին մէջ, գերեզմանատան մօտ:
Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. ԱՐՂՈՒԹԵԱՆ խումբին, հովանաւորութեամբ Փարիզի ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻՆ
եւ մասնակցութեամբ «Զաւարեան» կոմիտէի, «Ս. Մինասեան», «Արծիւ», «Վարդան», «Արամ»
ենթակոմիտէներու եւ «Փոթորիկ», «Րաֆֆի», «Ռոստոմ», «Քրիստափոր», «Անդրէաս Սերոբ – Մկրտիչ Եօթնեղբայ – րեան», «Շ. Միսաքեան» խումբերուն:
Կը խօսին ԸՆԿԵՐՆԵՐ ԳԵՐԱՍԻՄ ԲԱԼԱՅԵԱՆ եւ ՀՐԱՉ ՀԱՆՏԱԼԵԱՆ
Ժամը 15ին յարգանքի այց Իշխան եւ Իշխանուհի Յովսէփ եւ Սաթենիկ Արղութեանցի, եւ բժ. Յովսէփ Տէր-Դաւթեանի շիրիմներուն:
Կը խօսի Շաւիլի քաղաքապետ՝ ՕՍԷՌ
Գեղարուեստական ճոխ բաժին: Կը մասնակցին՝ Տիկին Շաքէ Գպայճեան, Օր. Շաքէ Յովհաննէսեան, Աստղիկ Քէօսէեան, ընկեր Երուանդ Գրիգորեան: Անձրեւի պարագային ապահովուած է բաղաքապետարանին սրահը:
Ճոխ եւ առատ պիւֆէ: Մասնաւոր տեղ կառքերու համար:
Հասոյթը՝ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ
Ալփորվիլէն օթօքառերը կը մեկնին առաւօտեան ժամը ութին, Գուլվ. Քառնոյէն Իսկ Փորթ տ'Իթալիէն ժամը 8·30ին
Այժմէն ապահովեցէք ձեր տոմսակները: Գին՝ 400 Ֆրանք:

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Կիրակի, Յուլիս 26, ամբողջ օրը, ՎԱԼԱՊՐԻ ԱՆՏԱՌԻՆ ՄԷՋ
Նախաձեռնութեամբ Մարսէյլի Հ. Յ. Դ. ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻՆ

Կը նախագահէ՝ ԸՆԿ. Յ. ՊԵՏՐՈՍԵԱՆ

Կը խօսի ընկ. Ա. ՔԷՕՍԷԵԱՆ

Գեղարուեստական բաժին— Հայկական պարեր Սէն Լուի Նոր Սերունդի պարախումբին կողմէ: Գուլի մրցում, չամփուրով խորոված, պիւֆէ:
ՄԱՐՍԷՅԼ քաղաքի համար արձանագրուիլ մինչեւ Ուրբաթ 24 Յուլիս, 300 Ֆրանք երթուդարձի համար: Ա. Քէօսէյեանին (Փլաս տ'էքս): «Յառաջ»ի հաստավաճառ Գ. Ծերիկեանին, (Տոմի–նիքէն), մսավաճառ Ա. Պետրոսեանին (Փրթիթ Մարի):
Օթօքառը Փլաս տ'էքսէն նոյն օրը առաւօտ ժամը եօթին:

ԳՈՄՈՆԷՆ հանրակառքը կը մեկնի ժամը 7·30ին:

Արձանագրուիլ ընկերներ Նշան Դարբինեանի, Յակոբ Տօլպաշեանի, Սերժ Սարգիսեանի եւ Յովսէփ Գոճակէօզեանի մօտ:

## ՏԷՍԻՆԻ ՄԷՋ

★

Ծանասորի արշաւանքի առիթով կը տօնուի՝ ընտանեկան զաւտահանդէսով:

Կազմակերպուած՝ Տէսինի եւ Լիոնի կոմիտէներուն կողմէ:

Տեղի պիտի ունենայ 26 Յուլիս, Կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ, Քաֆէ րակի առաւօտէն մինչեւ երեկոյ Ջրանցքին

Գեղարուեստական բաժին, անակնկալներ: Կը հրաւիրուի Լիոնի եւ Տէսինի Հայութիւնը անխտիր:

Լիոնի հանրակառքը կը մեկնի Փլաս Կիշառէն ժամը 10ին:

ՇԱՒԻԼ
ափին, «Քաֆէ Կապիյօն»ի բակին մէջ:
Ճոխ պիւֆէ, չամփուրով խորոված, մատչելի գիներով:

## ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. «Վառուժան» կոմիտէի եւ մասնակցութեամբ Սէնթ Էթիէնի «Անտոք» ենթակոմիտէին և Նոր Սերունդի «Վարդգէս» խումբին:

26 Յուլիս, Կիրակի առաւօտեան ժամը տասնէն մինչեւ 22, Փոն Անթէնի (Վարիզէլ) Օ Պեռժ տը Սօլ զովասուն պարտէզին մէջ:
Նախագահութեամբ՝ ընկեր Ա. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆի:
Կը խօսի ընկ. Ս. ԸՆՏՐԻԿԵԱՆ:
Գեղարուեստական ճոխ բաժին եւ այլ անակնկալներ:
Մասնակցութեամբ Սէնթ Էթիէնի եւ Սէն Շամոնի Նոր Սերունդին:
Կը հրաւիրուին Կեդր. Ֆրանսայի բոլոր քոյր կազմակերպութիւնները:
Ուտելիքներ հետերնին բերել, բացի խմիչքէն:

## ՎԱԼԱՆՍԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Նոր Սերունդի Շ. Միսաքեան խումբին:
Հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Շրջ. Կոմիտէի եւ մասնակցութեամբ Կեդր. Ֆրանսայի քոյր մասնաճիւղերու:
Այս Կիրակի ամբողջ օրը Սէն Փէրէի զովասուն անտառին մէջ:
Կը խօսի ընկ. ԺԻՐԱՅՐ ՄԻՐԻՃԵԱՆ
Գեղարուեստական ճոխ բաժին:
Հայկական եւ եւրոպական պարեր:
Առատ կեր ու խում չամփուրով խորոված:
Կը հրաւիրուին Վալանսի եւ շրջաններու հայրենակիցները անխտիր:

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

ՄԱՐՍԷՅԼ.— Այրի Տիկին Աղաւնի Մկրտիչեան եւ զաւակները՝ Զօնիկ, Վազգէն, Ժորժիկ, ու Տէր եւ Տիկին Միհրան Մկրտիչեան եւ զաւակը՝ Գուրգէն կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ, Փրատոյի Ս. Սահակ-Մեսրոպ Մայր Եկեղեցւոյ մէջ, ողբացեալներ՝
ԵՐՈՒԱՆԴ ՄԿՐՏԻՉԵԱՆի
եւ
ՎԱՐԴԱՆՈՒՇ ՄԿՐՏԻՉԵԱՆի
(Վանեցի), մահերուն առաջին տարելիցին առթիւ:

ՇԱՒԻԼ
Շաւիլի Հայոց Եկեղեցիին հոգաբարձութիւնը կը յայտարարէ թէ Յուլիս 26–ին կիրակի առաւօտ պիտի կատարուի պատարագը:

## Կ'ՈՒԶՈՒԻՆ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանին համար. 1) Նախապատրաստական 8–7րդ դասարաններուն համար իբրեւ ուսուցչուհի հայ օրիորդ մը, որ Ֆրանսական բարձրագոյն կրթութիւն ստացած ըլլայ. ի հարկին գիշերօթիկ:
2) Աշխատող կին մը, իբրեւ օգնական խոհարարուհի:
Դիմել վարժարան, գրաւոր, տալով անուն, տարիք եւ հասցէ:
1 Bld. du Nord - Le Raincy
Seine-et-Oise

Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## ԿԱՐԵՒՈՐ

### Հ. Յ. Դ. ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԲԱՆԱԿՈՒՄ

Վերջին կարգադրութիւններուն համար, բանակումի բոլոր մասնակցողները ստիպողաբար կը հրաւիրուին այս Շաբաթ իրիկուն ժամը 21ին, Մշակոյթի Տան սրահը, 17 Րիւ Պլէօ, իւրաքանչիւր մասնակցողը այդ օրը պէտք է վճարէ հինգ հազար Ֆրանք որպէս կանխավճար եւ հինգ հազար Ֆրանք համազգային տոմսին համար:

### ՏԻԳՐԱՆ ԲԱՂՏԱՍԱՐԵԱՆԻ ՅԻՇԱՏԱԿԻՆ

Այրի Տիկին Տիգրան Բաղտասարեան եւ զաւակը՝ Վահագն իրենց ամուսնոյն եւ հօր՝ Տիգրան Բաղտասարեանի մահուան չորրորդ տարեդարձին առթիւ 5000 Ֆր. կը նուիրեն «Յառաջ»ին, չորս հազար Ֆր. Հ. Յ. Դ. Թանգարանին, երեք հազար Մշակոյթի Տան, երեք հազար Կապոյտ Խաչի կայանին: (Ստանալ «Յառաջ»էն):

### ՍԻՓԱՆ - ԿՈՄԻՏԱՍ

Երգչախումբի տարեվերջի պտոյտը Փիէ – Նիֆի ձեւին տակ:
Կիրակի 26 Յուլիս:

SAINTRY - Auberge du
" Père TICHIT ", ի դետեզերքը

Ժամադրութիւն Կառ տը Լիոն, գուրսի մեծ ժամացոյցին տակ, ժամը 8·30ին:
Կը հրաւիրուին բոլոր անդամները եւ բարեկամները:
Անձնական կառքով գալ փափաքողներէն կը խնդրուի հետեւիլ նոյն ժամադրութեան:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Կապ. Խաչի Վիէնի վարչութիւնս շնորհակալութեամբ ստացած է Գ. Աղասի Գալեանէ, իրեն եղբօր Յակոբ Գալեանի եւ Հաճի Կարապետ Գալեանի յիշատակին հազար Ֆրանք:

×

Փարիզի Եկեղեցւոյ Կրթ. Յանձնաժողովի դիւանը շնորհակալութեամբ ստացած է հետեւեալ նուէրները.— Տէր եւ Տիկին Յովհաննէս Գիւրջօղլեան եւ Գ. Մազոուտ Գէրպէրեանէ չորս հազար Ֆր., իրենց սիրեցեալ մօր եւ զոքանչ մօր՝ Այրի Տիկին Հերմինէ Գէրպէրեանի մահուան առթիւ: Գ. Արամ Տարօնեանէ երեք հազար Ֆր. Գ. Գզտիկեանի եւ Օր. Բէ–յիգեանի ամուսնութեան առթիւ

×

Կապ. Խաչի Կրընոպլի մասնաճիւղը ջերմօրէն շնորհակալութիւն կը յայտնէ, գաղութիս բոլոր արտաւ հայրենակիցներուն, որոնք այս տարի եւս սիրով մասնակցեցան «Մայրերու Տօնին» առիթով, ի նպաստ կազմակերպութեանս հովանաւորած պարոցքին՝ եղած հանգանակութեան.—
Տիկիններ Վալանթին Յովակիմեան, Տէրմէնճեան, Կէպէնեան 500ական Ֆր., Տէր եւ Տիկին Անտոնեան հազար, Տէր եւ Տիկին Մ. Կիւմիւշեան 500, Տիկին Քէհեան 300, Տիկին Մ. Մինասեան հազար, Տիկին Եւա Իւզկիւլեան 300, Գ. Համեան 500, Աշխէն Յովնանեան 500 Ֆրանք:
(Շար.)

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

Գ. Գրիգոր Գազանճեանէ Հանճի Գրիգոր Գապասայեանի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի 2630 ֆրանք: (Բ. հրատարակութիւն):

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉ

Ֆրանսահայ Կապոյտ Խաչի Կեդր. վարչութիւնը խորին շնորհակալութեամբ ըստացաւ, Գալուստ Կիւլպէնկեան հիմնարկութենէն 210.000 Ֆրանքի յատկացում մը, իր արձակուրդի կայանին մէջ տասը փոքրիկներու մէկ ամսուան ձրի բնակութիւնը ապահովելու համար, 1959ի ընթացքին:

Շնորհիւ այս օժանդակութեան, Ֆրանսահայ Կապոյտ Խաչը ի վիճակի եղաւ հազար լիթրնոց ջրաբաշխ մեքենայ մը գնելու Պէլֆոնթէնի (Ժիւրա)իր հաստատութեան մէջ:

## ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Առաջին խումբը Պէլֆոնթէնէն Փարիզ կը հասնի Կիրակի 2 Օգոստոս, առաւօտեան ժամը 6.35ին Կառ տը Լիոն:

Բ. խումբը Փարիզէն կը մեկնի 3 Օգոստոսին Կառ տը Լիոն Փլաս տը լ'Օռլօժ, գտնուիլ ժամը ճիշդ 22.30ին:

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Լիոնի Եկեղեցաշէն յանձնախումբը, անհուն շնորհակալութեամբ ստացաւ Բ. անգամ ըլլալով Պէյրութէն Ժամկոչեանէ յիսուն հազար ֆրանք, ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան:

Եկեղեցաշէն Տիկնանց Միութիւնը շնորհակալութեամբ ստացաւ հետեւեալ նուիրատուութիւնները ի նպաստ Լիոնի եկեղեցւոյ շինութեան — Մարսէյլէն Գ. Միշէլ Զավուշեանէ երկու հազար Ֆր., Ժըւանվիլ լը Փէնէն Գ. Մկրտիչ Եազըճեանէ հազար ֆրանք Ոմն 5000 ֆրանք, Գ. Գ. Տիգրան Սալըբեանի մահուան առթիւ Աւետիս Գուրսալեան փոխան ծաղկեպսակի շինութեան կը նուիրէ հինգ հազար ֆրանք, Ստեփան Խաչմանեան հինգ հարիւր ֆրանք:



Imprimerie Spéciale
du Journal « Haratch »

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՎԱԼԱՆՍ — Հ. Յ. Դ. Շրջ. «Քրիստափոր» կոմիտէի ընդհ. ընկերական ժողովը այս Շաբաթ, ժամը 20.30ին, Ահարոնեան ակումբը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է: Կարեւոր օրակարգ:

### ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

ԱԼՖՈՐՎԻԼ — Հ. Յ. Դ. Ս. Մինասեան ենթակոմիտէն ցաւակցութիւն կը յայտնէ Այրի Տիկին Անուշ Եղիշէեանի, Տէր եւ Տիկին Յովհաննէսեանի, Տէր եւ Տիկին Եղիա Եղիշէեանի, իրենց զաւկին, եղբօր եւ տագրին, տարաբախտ Յովհաննէս Եղիշէեանի մահուան առթիւ:

Եւ փոխան ծաղկեպսակի Հայ Մշակոյթի Տան կը նուիրէ 3000 Ֆրանք:

## ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ

### ԱՐՁԱԿՈՒՐԴԻ ՄԵԿՆՈՂ ԲԱԺԱՆՈՐԴՆԵՐ

Մեր բաժանորդները որ կը փափաքին առժամապէս, նոր հասցէի մը ստանալ թերթը պէտք է գրաւոր գիմեն վարչութեան: Փոխելի թուականէն գոնէ երկու օր առաջ, պէտք է տան ԻՐԵՆՑ ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՀԱՍՑԷՆԵՐԸ, վճարեն հարիւր ֆրանք փոփոխութեան համար եւ նորոգած ըլլան իրենց ընթացիկ բաժանորդագրութիւնը:

Այս պայմանները չլրացնող դիմումներուն գոհացում պիտի չտրուի. նոյնպէս՝ նկատի պիտի չառնուին միայն հեռաձայնով կատարուած հաղորդումները, որոնք կրնան անունի եւ հասցէի սխալներ ըստեղծել:

Մեր հատադնորդ ընթերցողներուն համար, արձակուրդի բացառիկ միամսեայ բաժանորդագրութեան գինն է 600 Ֆր.:

×

Անգամ մը եւս կը խնդրենք մեր հաւատարիմ բաժանորդներէն որ փութան կատարել իրենց վճարումները, դիւրացնելու համար վարչութեան գործը:

Շնորհակալութիւն այն բոլոր բաժանորդներուն որոնք իրենց կանխիկ եւ պարտաճանաչ վճարումներով կ'օժանդակեն թերթին կանոնաւոր հրատարակութեան:

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ



## ՇՔԵՂ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Ամբողջ երեք օր, Սէն-Լուի մէջ (Պուլվ. Կրան-Փէն)

Հովանաւորութեամբ՝ Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէի, կազմակերպութեամբ՝ Հ. Յ. Ակնունի ենթակոմիտէի եւ «Նոր Սերունդի Սիամանթօ խումբին:

Ա. — 31 Յուլիս, Ուրբաթ գիշեր ժամը 21ին: Երաժշտահանդէս մասնակցութեամբ Անտրէ Րէնարի եւ ութ ուրիշ երգիչներու:

Բ. — 1 Օգոստոս Շաբաթ կէսօրէ ետք Մանկական խաղեր, ղեկավարութեամբ՝ ընկեր Քէէէվեանի. Պուլի մեծ մրցում:

**Coupe D. MATALON**

Conseiller Général du 10ème Canton

15.000 ֆրանք, Ա. մրցանակ: Նոյն գիշերը ժամը 9.30ին պարահանդէս

**Camp. " La Germaine „ Orchestre Pierre VIGNAL**

Գ. — Կիրակի առաւօտ՝ հոգեհանգիստ Թաղի ննջեցեալ ընկերներու յիշատակին:

Ժամը 11ին, ժողովրդային հաւաքոյթ, եկեղեցիի սրահին մէջ, մասնակցութեամբ Գ. Գ. Յ. Պապիկեանի, Յ. Ադայեանի, Տ. Թադոյեանի, Ա. Քէօսէեանի, Կ. Փօլատեանի եւ Ժ. Միրիճեանի: կէսօրին՝ գինեձօն եւ ճաշ ի պատիւ Տ. Մաքալոնի եւ Իրմա Ռափիւցցիի (Պուշ-Տիւ-Ռոնի Ծերակուտական) եւ միւս հիւրերուն, Գ. Զաւրաբեանի ագարակը:

Կէսօրէ ետք — դաշտահանդէս, երգ, արտասանութիւն, ինչպէս նաեւ քրքջալից զաւեշտ մը, հայկական պարեր Սէն Լուի Սիամանթօ խումբին կողմէ:

Ֆրանսերէն եւ հայերէն կ'երգեն՝

**Suzy TOM**

Revélation de l'Emission Paris-Cocktail

**Charly Soavi**

La Voix d'Or du Music-Hall

Գիշերը, ժամը 21ին պարահանդէս Քամփ. «Լա Ժէրմէն»:

Ճաշի մասնակցութիւն 800 Ֆրանք: Նախօրօք արձանագրուիլ՝ Քաղաքը՝ Ա. Քէօսէեանի մօտ, Ֆօթօ Րէքս եւ շրջանները՝ Հ. Յ. Դ. մարմիններուն մօտ:

## ՀԵՐՈՍՆԵՐՈՒ ՕՐԸ

### ՆԻՍԻ ՄԷՋ

Օգոստոս 9ին:

Մանրամասնութիւնները յաջորդով:

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՀԱՄԱԽԱՐԲԵՐԴ. Հայր. Միութեան Վալանսի մասնաճիւղս ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամները այս Շաբաթ, ժամը 21ին, Գ. Սիմոնեանի սրճարանը: Օրակարգ — Հաշուետուութիւն եւ պատգամաւորներու ընտրութիւն:

## Կ'ՈՒԶՈՒԻ

Դպրոցասէր Տիկնանց վարժարանին համար, 1) Նախապատրաստական 8-7րդ դասարաններուն համար իբրեւ ուսուցչուհի հայ օրիորդ մը, որ Ֆրանսական բարձրագոյն կրթութիւն ստացած ըլլայ. ի հարկին գիշերօթիկ:

2) Աշխատող կին մը, իբրեւ օգնական խոհարարուհի:

Դիմել վարժարան, գրաւոր, տալով անուն, տարիք եւ հասցէ:

1 Bld. du Nord - Le Raincy
Seine-et-Oise

